Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Սովետական Միության անծայրածիր երկրով մեկ, գնալով ավելի է ծավալվում սոցիալիստական մրցությունը 1951 թվականի տնտեսական պլանները ժամկետից շուտ կատարելու համար։ Ամենուրեք, սովետական մարդիկ, համակված ժողովրդական տնտեսության վերելքը խթանելու գաղափարով, դիմում են ստեղծագործական նոր նախաձեռնությունների։ Ռոանդուն աշխատանքով նրանք ձգտում են էլ ավելի հզորացնել մեր սոցիալիստական Հայրենիքը և դրանով իսկ ամրապնդել խաղաղությունը ամբողջ աշխարհում։

Սովետական մարդկանց աշխատանքային խանդավառությունը նշանավորվում է նոր, հերոսական գործերով։ Նրանք անդադրում փնտրում և գտնում են նոր ուղիներ ու միջոցներ իրենց հայրենասիրական ձգտումներն իրականացնելու, էլ ավելի ակտիվո-

րեն մասնակցելու կոմունիզմի կառուցման հոյակապ գործին։

Պետական տարեկան առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համաժողովրդական շարժման գործում, շնորհակալ դեր ունեն մեր ագիտատորները։

Գործարաններում, տրանսպորտում, կոլտնտեսային դաշտերում և ամենուր, ագիտատորներին է վստահված մասսաների մեջ քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպումը։ Նրանց է հանձնարարված մեր պարտիայի ամենագլխավոր զենքերից մեկը՝ քաղաքական ագիտացիայի գործը։

Այդ մեծագույն վստահությունն արդարացնելու, քաղաքական-մասսայական աշխատանքները մեր երկրի առջև դրված նոր, հոյակապ խնդիրների բովանդակությամբ հագեցնելու համար, ագիտատորները պետք է ակտիվացնեն իրենց աշխատանքը։ Յուրաքանչյուր ագիտատոր պետք է կազմակերպի իր աշխատանքը այն հաշվով, որ ագիտացիոն յուրաքանչյուր պարապմունքի թեմա ունկըն-



դիրների մոտ առաջացնի կրքոտ հետաքրքրություն և որ գլխավորն է, ունենա անպայման գործնական հետևանք։

Այժմ ամեն մի ագիտատորի խնդիրն է՝ աջակցել և ամենագործոն կերպով մասնակցել 1951 թվականի պլանները ժամկետից շուտ կատարելու համար նախաձեռնված սոցիալիստական մրցության կազմակերպմանը։ Ագիտատորը պետք է արտադրության մեջ աշխատող իր բոլոր ունկնդիրներին ներգրավի մրցության մեջ, հրաժարվելով մրցության մեջ մտնելու մասին սոսկ հայտարարություն անելու, կամ սոցիալիստական պարտավորության պայմանագրերի կնքումը ձևական արարողության վերածելու պրակտիկայից։

Ագիտատորը պետք է բանվորների և բանվորուհիների, տեխնիկական անձնակազմի հետ ուսումնասիրի աշխատանքի պայմանները, նրանց հետ միասին հայտնաբերի աշխատամասում բարձր արտադրողականության համար եղած հնարավորությունները և ըստ այնմ աջակցի սոցիալիստական պայմանագիր կնքելու գործին։

Սոցիալիստական մրցության կազմա-

կերպման այս եղանակը ունի այն առավելությունը, որ ագիտատորը գործ կունենա գրավոր պայմանագրով մրցող մարդկանց հետ։ Նախօրոք ծանոթ լինելով իր ունկընդիրների գրանցված պարտավորությունների կենսագործման ռեալ հնարավորությունների հետ, ագիտատորը նոր միայն կարող է ճշմարիտ և կոնկրետ ագիտացիա կազմակերպել, հետևել մրցության ընթացքին, բորբոքել, առաջ մղել այն։

Տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելու համար նախաձեռնված սոցիալիստական մրցությունը, ագիտատորները պետք է առաջ մղեն մեր Միության առաջավոր ձեռնարկությունների, արդյունաբերության նորարարների աշխատանքի հարուստ փորձը արմատավորելու ուղիով։ Դրա հետ միաժամանակ, ինչպես ամեն դեպքում, այս անգամ ևս սոցիալիստական մրցությունը առաջ կքաշի փառավոր գործերի նոր և նոր նախաձեռնողներ։ Այդ դեպքում ագիտատորի խնդիրն է՝ առաջիններից մեկը նկատել իր աշխատած ձեռնարկության մեջ ծնված նորը, առաջավորը և աշխատանք ծավալել



այն արմատավորելու, նորի ճանապարհից հեռացնելու ամեն մի խոչնդոտ, կոտրելու ամեն մի դիմադրություն։

Մեր պարտիայի մարտական օրգան «Պրավդան» սովորեցնում է, որ քաղաքական ագիտացիան պետք է ակտիվ կերպով պաշտպանի ամեն մի նորը, պրոգրեսիվը և առաջավորը, վճռականորեն պետք է հանդես գա հին սովորությունների և դանդաղաշարժության դեմ, աշխատանքի, հասարակական սեփականության նկատմամբ ոչ բարեխիղճ վերաբերմունքի դեմ։

Ավելի շատ և ավելի որակյալ արտադրանք թողարկելը մեծապես կախված է այն բանից, թե ինչպես կծավալվի ագիտացիոն աշխատանքը բանվորական օրվա յուրաքանչյուր րոպեն արտադրողաբար օգտագործելու, մեխանիզմները նախագծային կարողությամբ աշխատեցնելու, աշխատանքի տեղը խելոք նախապատրաստելու, հումքը, օժանդակ նյութերը, էներգիան խնայողաբար օգտագործելու ուղղությամբ։

Գյուղատնտեսության մեջ հաջողություններն ամրապնդելու և առաջ մղելու համար ագիտացիոն աշխատանքը պետք է իսպաս

դրվի կուլտենտեսային առատ բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու նպատակին։ Անասունների գլխաքանակը և մթերատվությունը բարձրացնելու համար, մասսայական բացատրական աշխատանքը պետք է գնա ամառային արոտը լավագույն կերպով կազմակերպելու, մատղաշների խնամքը բարելավելու, անասունների հոտն ազնվացնելու, անասնակերի բազա ստեղծելու, մսուրային շրջանը նախապատրաստելու ուղղությամբ։

Վերոհիշյալ աշխատանքների մասին ագիտացիան պետք է ուշի-ուշով նախապատրաստվի։ Ագիտատորը նախօրոք պետք է լինի աշխատամասում, ուսումնասիրի իրադրությունը, իր մոտ գրանցի թվեր ու փաստեր, լսի աշխատողներին, ճշտի, հարստացնի իր գիտելիքները և նոր միայն ներկայանա պարապմունքի։

Այս կերպ նախապատրաստված պարապմունքը միայն կանցնի գործարար մթնոլորտում և կունենա գործնական հետևանք։

Ագիտացիոն պարապմունքի ժամանակ, անհրաժեշտ է հրապարակել և քննարկել



սոցիալիստական մրցության յուրաքանչյուր մասնակցի աշխատանքի արդյունքը։ Կազմակերպել մրցության առաջավորների զրույցները իրենց աշխատանքի գործադրած ձևերի ու մեթոդների մասին։ Մասսայականացնել առաջավորների փորձը։ Անհրաժեշտ է ծավալել հետ մնացողների աշխատանքի քննադատությունը, կազմակերպել նրանց օգնությունը և սոցիալիստական համակեցության, ընկերական փոխօգնության միջոցով հասնել արտադրական մասսայական վերելքի։

Արտադրական պլանների շուրջը ագիտացիան պետք է անպայման առնչվի Սովետական Միության մեջ կատարվող աշխատանքային իրադրությունների, կոմունիզմի հզոր կառուցումների, ինչպես նաև միջազգային իրադարձությունների մասին թեմաների հետ։

Փաստական հարուստ նյութերով ունկնդիրներին տեղեկացնել սովետական, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների ժողովուրդների խաղաղության համար մղած անդուլ պայքարի, խաղաղության և դեմոկրատիայի լագերի աճման ու ամրապնդման փաստերի հետ։ Ունկնդիրներին տեղյակ պահել ամերիկյան իմպերիալիզմի կողմից խաղաղության ու դեմոկրատիայի

դեմ կատարվող ոտնձգությունների, պատերազմի նախապատրաստման և հրահրման, Կորեայում կատարվող վայրագությունների փաստերի հետ։

Հինգ մեծ տերությունների միջև խաղաղության Պակտ կնքելու համար, Սովետական Միության և աշխարհի ժողովուրդների շարժումը, մեր երկրում առաջացրել է արտադրական վերելք։ Ագիտատորների մարտական խնդիրն է՝ պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, ապահովել աշխատավորական կոլեկտիվների ամենաակտիվ մասնակցությունը այդ շարժմանը, գլխավորել հանուն խաղաղության, հանուն մեր երկրի էլ ավելի բարգավաճման օրավուր բո̄րբոքվող սոցիալիստական մրցությունը։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ՆՈՐ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՄԱՏԱՎՈՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Մոսկվայի «Բուրևեստնիկ» կոշիկի ֆաբրիկայի ստախանովականներ Մարիա Լևչենկոն և Գրիգորի Մուխանովը մի նոր, նշանավոր նախաձեռնություն են հանդես բերել։ Նրանք առաջարկել են սոցիալիստական մրցություն կազմակերպել յուրաքանչյուր արտադրական օպերացիայի ընթացքում արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար։

Ինչպես ամենուր, այնպես էլ Երևանի Կոշիկի 3-րդ ֆաբրիկայում, այդ արժեքավոր առաջարկությունը ջերմ ընդունելություն գտավ։

Այդ նոր, հիանալի նախաձեռնությունը մեր ֆաբրիկայի երեխաների կոշիկի արտադրության բաժնում, ուր ես ագիտատոր եմ, արմատավորելու համար սկսեցի նախապատրաստվել։

Ամենից առաջ ինձ համար հանգամանորեն պարզեցի, թե ինչից է գոյանում մեր ֆաբրիկայի արտադրանքի ինքնարժեքը։

Համապատասխան դրան, հաշվային աշխատողների հետ ուսումնասիրեցի աշխատանքի տարբեր օպերացիաների համար նախատեսված ժամանակը առավել նպատակահարմար օգտագործելու, տեխնիկան նախագծային ծանրաբեռնվածությամբ աշխատեցնելու, արտադրական պրոցեսները բարելավելու, աշխատանքի տեղի նախապատրաստման, ինչպես նաև խնայողության հնարավորության բոլոր հարցերը։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիները ուսումնասիրելու հետ միասին, ուշի-ուշով ծանոթացա այս նոր նախաձեռնության հեղինակներ, ստախանովականներ Մ. Լևչենկոյի, Գ. Մոսխանովի աշխատանքի եղանակների հետ։

Այսպես նախապատրաստված սկսեցի ագիտացիան։ Բանվորներին ու բանվորուհիներին հաղորդելով նոր նախաձեռնության մասին, վեր հանեցի նրա տնտեսական-քաղաքական հսկայական նշանակությունը մեր երկրի համար, աշխատավորության կուլտուրական-կենցաղային դրության էլ ավելի բարելավման համար։

Ունկնդիրների հետաքրքրությունը բավարարելուց հետո, թվարկեցի աշխատանքի կազմակերպման, ինչպես նաև խնայողու-



թյան ուղղությամբ մինչ այդ ֆաբրիկայում ձեռք բերած, հասարակայնությանը լայնորեն հայտնի նվաճումները։ Այս բոլորից հետո ունկնդիրներին թվաց, ինչպես նաև ինձ համար սկզբում, թե մեր ֆաբրիկայում արված է շատ բան և քիչ աշխատանք կա անելու արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու ուղղությամբ։

Շարունակելով ագիտացիան, «Բուրևեստնիկ» կոշիկի ֆաբրիկայի ստախանովական բանվորների աշխատանքի օրինակով ցույց տվեցի, թե ինչպես յուրաքանչյուր արտադրական օպերացիայում խնայողություն անելու աշխատանքի եղանակը բերում է նորանոր օգուտներ և իջեցնում արտադրանքի ինքնարժեքը։

Ունկնդիրները համոզվեցին, որ «Բուրևեստնիկ» ֆաբրիկայի ստախանովականների հաջողությունները արդյունք են աշխատանքի նոր եղանակների գործադրման։ Ագիտացիոն պարապմունքը ընդունեց ակտիվ բնույթ։ Բանվոր-բանվորուհիները մինչ այդ նոր նախաձեռնության նկատմամբ հետաքրքրությունից, անցան իրենց անելիքների քննարկմանը։

Յուրաքանչյուր արտադրական օպերացիայի ընթացքում, արտադրանքի ինքնար-

ժեքի իջեցման համար սոցիալիստական մրցություն կազմակերպելու առաջարկությունը համակեց բոլորին։ Պարապմունքի վերջում հանձնարարեցի ունկնդիրներին՝ մտածել և իրենց անելիքները որոշելուց հետո, կոնկրետ պարտավորություններով ներկայանալ հերթական պարապմունքին։

Հաջորդ օրը, ագիտացիոն պարապմունքի ինձ հետ տարա ֆաբրիկայի գլխավոր հաշվապահ ընկ. Էդ. Գրիգորյանին, որը «Բուրևեստնիկ» կոշիկի ֆաբրիկայի կարելու ցեխի ավագ հաշվապահ ընկ. Պ. Ջավադսկայայի օրինակով, համարվում է նոր նախաձեռնությունը մեր ֆաբրիկայում արմատավորելու գլխավոր ոգեշնչողներից մեկը։

Ագիտացիոն պարապմունքի սկզբից երևաց, որ բոլոր բանվորները և բանվորուհիները, ինչպես նաև ցեխի տեխնիկական անձնակազմը, մտածել և որոշել են իրենց անելիքները։ Այժմ արդեն, արտադրության մեջ աշխատողները, ելնելով տեղի պայմաններից, առաջարկում էին աշխատանքի նոր եղանակներ, որոնց գործադրման շնորհիվ կհասնեն նոր, մինչ այդ անծանոթ, բարձր ցուցանիշների։

Կտորից կոշիկի երեսացու ձևող ընկ.



Մ. Թումանյանը ունկնդիրներին պատմեց, թե ինչպես «Բուրևեստնիկ» ֆաբրիկայի ստախանովականների նախաձեռնությունը ոգևորել է իրեն։ Նա հաղորդեց, որ ինքը, հետևելով նրանց օրինակին, արտադրական յուրաքանչյուր օպերացիայի ժամանակ կանի խնայողություն և երկրին այս տարի կտա լրացուցիչ 25.000 ռուբլու օգուտ և դրանով կօգնի ֆաբրիկայի արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։ Կոշտ կաշի ձևող ընկ. Ա. Ջիվարյանը, հետևելով Մ. Թումանյանին, սոցիալիստական պարտավորություն վերցրեց՝ բարելավել աշխատանքի տեղի նախապատրաստման գործը, աշխատանքային օրվա յուրաքանչյուր րոպեն օգտագործել առավել նպատակահարմար և տալ լրացուցիչ 45.000 ռուբլու խնայողություն։

Նոր նախաձեռնության արմատավորման համար չափազանց բնորոշ է կարող բանվոր ընկ. Գ. Ջալիկյանի սոցիալիստական պարտավորությունը։ Ջալիկյանը, հաշվելով արտադրական յուրաքանչյուր պրոցեսում օգտագործվող օժանդակ նյութերի, ինչպես օրինակ՝ թելի, ասեղի, մեխի, երիզի պլանային կորուստները, պարտավորվեց տեխնոլոգիական պրոցեսների բարելավման միջոցով այդ կորուստները հասցնել մինիմումի

և երկրին տալ 2 հազար ռուբլու խնայողություն։

Մտնելով սոցիալիստական մրցության մեջ, նմանօրինակ պարտավորություններ վերցրին ցեխի բոլոր բանվոր-բանվորուհիները, տեխնիկական անձնակազմը։

Այս ագիտացիոն պարապմունքի վերջում գլխավոր հաշվապահ ընկ. Էդ. Գրիգորյանը խոսեց այն ռեալ հնարավորությունների մասին, որ կան ֆաբրիկայում՝ արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու համար։ Բացատրեց ունկնդիրներին ըստ նոր նախաձեռնության հաշվային աշխատանքները վերակառուցելու անհրաժեշտությունը, այն հաշվով, որ ապահովվի յուրաքանչյուր արտադրական պրոցեսում ինքնարժեքի իջեցման համար տարվող աշխատանքների և մասնավորապես խնայողությունների մանրազնին հաշվառումը։

Նոր նախաձեռնության արմատավորման համար կազմակերպված այս երկու ագիտացիոն պարապմունքներից անմիջապես հետո, ֆաբրիկայի կոլեկտիվին հայտնի դարձան մեր բաժնի առաջին հաջողությունները։

Բանվորուհի Մ. Թումանյանը, աշխատելով արտադրական յուրաքանչյուր պրոցեսում խնայողություն կատարելու մեթոդով,



մինչ այդ օրական տնտեսած 40 ռուբլու հումքի դիմաց, սկսեց խնայել 100 ռուբլու հումք։ Փափուկ կաշի ձևողստախանովական բանվորուհի Ս. Կարապետյանը աշխատանքի նոր եղանակի շնորհիվ 30 ռուբլու հումքի դիմաց, այժմ օրական խնայում է 70 ռուբլու հումք։ Նմանօրինակ հաջողություններ ունեն Ս. Ջիվարյանը, Հ. Սլդրյանը և շատ ուրիշներ։ Խնայողությունների աճի հետ միասին ցեխում բարելավվել է թողարկվող արտադրանքի որակը, բանվորները և բանվորուհիները սկսել են օրական կատարել 1,5—2 արտադրական նորմա։

Ագիտացիոն հերթական պարապմունքների ժամանակ սկսեցի ցուցադրել աշխատանքի լավագույն օրինակները և դրա շնորհիվ ձեռք բերած առաջին հաջողությունները։ Ագիտացիայի ժամին, բանվորները և բանվորուհիները պատմում են այն անընդմեջ աշխատանքի մասին, որ տանում են տեխնիկան տիրապետելու, հերթափոխությունը լավագույն կերպով կատարելու, աշխատանքի տեղը նախապատրաստելու, հումքը, օժանդակ նյութերը, էներգիան խնայելու ուղղությամբ։

Պարապմունքի այս մեթոդով, մասսայականացնում եմ աշխատանքի լավագույն

փորձը, բուրբուրում հետաքրքրությունը առաջավոր բանվորների և բանվորուհիների գործադրած աշխատանքի նոր ձևերի նկատմամբ, կազմակերպում այդ նորի մասսայականացումը ու կենսագործումը։

Հետևելով Մոսկվայի «Բուրևեստնիկ» կոշիկի ֆաբրիկայի կոլեկտիվի օրինակին, ընդօրինակելով առաջավորների փորձը, արմատավորելով աշխատանքի առաջավոր ձևերն ու մեթոդները, այժմ արդեն մեր կոլեկտիվը արտադրանքի ինքնարժեքը, պլանով նախատեսված 2,9 տոկոսի փոխարեն, իջեցնում է 8,7 տոկոսով։ Այդ ցուցանիշը մեր ֆաբրիկայի կազմակերպությունների, ինչպես նաև ագիտկոլեկտիվի աշխատանքի արդյունքն է։ Այդ հաջողությունները, իհարկե, ոգևորում, բայց չեն հանգստացնում ագիտատորներիս։ Այժմ ես ագիտացիա եմ անում նախնական հաջողությունները ամրապնդելու, ավելի բարձր արտադրական ցուցանիշների հասնելու համար։

Զ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Երևանի կոշիկի 3-րդ ֆաբրիկայի ագիտատոր

## ԱԳԻՏԱՑԻԱՆ ՄԵՔԵՆԱ-ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԿԱՅԱՆԻ ՄԵԽԱՆԻԶԱՏՈՐՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Ախուրյանի մեքենա-տրակտորային կայանի մեխանիզատորները այս տարի ագրոտեխնիկական կանոններին լիովին համապատասխան կատարեցին գարնան գյուղատնտեսական աշխատանքները։ Նրանք խնամքով մշակեցին ցանքերը, աճեցրին հացահատիկի, շաքարի ճակնդեղի և այլ կուլտուրաների բարձր բերք։

Կոլտնտեսային դաշտերում աճած հացահատիկի և խոտաբույսերի առատ բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու համար քաղաքական-մասսայական աշխատանք ծավալելու հարցը քննության առնվեց մեքենա-տրակտորային կայանի պարտիական կազմակերպությունում։ Կազմակերպության ժողովը մեր լավագույն ագիտատորներին ամրացրեց 12 տրակտորային բրիգադներին՝ բերքահավաքի ընթացքում մեխանիզատորների շրջանում աշխատելու համար։

Մասսայական բերքահավաքի նախօրյակին պարտիական կազմակերպության բյուրոն հրավիրեց ագիտատորների մի քանի խոր-

հըրդակցություններ։ Մշակվեցին մեխանիզատորների սոցիալիստական մրցությունը կազմակերպելու, բերքահավաքի առաջավորների փորձի մասսայականացման, արմատավորման, պլանների գերակատարման, ինչպես նաև կորուստների դեմ պայքարելու ագիտացիոն աշխատանքի ձևերն ու մեթոդները։

Մեխանիզատորներին ամրացված ագիտատորներին ցույց տրվող օգնությունը սիստեմատիկ դարձնելու համար, լայնորեն կիրառվեց անհատական կոնսուլտացիաների մեթոդը։ ՀԿ(բ)Պ Ախուրյանի շրջանային կոմիտեի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի, ինչպես նաև մեքենա-տրակտորային կայանի ղեկավար աշխատողները, նախօրոք սահմանված օրերին, լինում են բերքահավաքի տեղամասերում։ Նրանք տեսական, մեթոդական օգնություն են ցույց տալիս ագիտատորներին, զրույցներ կազմակերպում մեխանիզատորների հետ։

Մեքենա-տրակտորային կայանի պարտիական կազմակերպության որոշմամբ լույս տեսավ շրջիկ պատի թերթ։ Ագիտատորների օգնությամբ շրջիկ պատի թերթում լուսաբանվում են բերքահավաքի տեղամասերում տարվող աշխատանքները։ Բացի այդ, պարտիական կազմակերպությունը ա-



մեն օր ագիտատորներին է հասցնում տրակտորային բոլոր ագրեգատների ամենօրյա աշխատանքների արդյունքների մասին տեղեկանք։ Այդ տեղեկանքի միջոցով տասնյակ կիլոմետր հեռու գտնվող տրակտորային բրիգադները ծանոթանում են միմյանց աշխատանքի արդյունքների հետ, բորբոքում սոցիալիստական մրցությունը, ձգտում հասնելու առաջավորներին, օգնում հետ մնացողներին։

Մեխանիզատորներին ամրացված ագիտատորները ժամանակին մասսայականացրին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ հացահատիկի և ծղոտի կորուստների դեմ պայքարելու մասին։ Նրանք, ուսումնասիրելով տեղերում տիրող իրական դրությունը, մեխանիզատորների ուշադրությունը բևեռեցին հացահատիկի և ծղոտի կորուստների փաստերի վրա, բարձրացրին կոմբայնավարների պատասխանատվությունը և այդպիսով կորուստները հասցրին մինիմումի։

Մասսայական բերքահավաքի առաջին օրերին ստացվեց Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության կոլեգիայի որոշումը՝ Ղարիբջանյանի մեքենա-տրակտորային կայանի առաջավոր կոմբայնավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ալեք-

ման Պողոսյանի աշխատանքի փորձի մասսայականացման և արմատավորման մասին։ Անվանի կոմբայնավարի աշխատանքի փորձը պարտիական կազմակերպության առաջադրանքով մանրամասը գրի առնվեց, բազմացվեց և ուղարկվեց բոլոր ագիտատորներին։ Բացի այդ, ագիտատորներից շատերը եղան Ա. Պողոսյանի մոտ, անձամբ ուսումնասիրեցին նրա աշխատանքի ձևերն ու մեթոդները, լսեցին նրա զրույցները և ագիտացիոն աշխատանք ծավալեցին առաջավոր կոմբայնավարի փորձը արմատավորելու համար։

Ախուրյանի մեքենա-տրակտորային կայանի կոմբայնավարները, ագիտատորների միջոցով ծանոթանալով Ա. Պողոսյանի աշխատանքի ձևերի ու մեթոդների հետ, ընդօրինակելով նրան, սոցիալիստական նոր պարտավորություններ ստանձնեցին։

«Ստալինեց» կոմբայնի կոմբայնավար Ն. Վանոյանը պարտավորվեց նորմայով նախատեսված 280-ի փոխարեն, սեզոնում հնձել 450, իսկ Շ. Քոչարյանը՝ 400 հեկտար հացահատիկային տարածություն։ Նմանօրինակ լրացուցիչ սոցիալիստական պարտավորություններ վերցրին «Կոմունար» կոմբայնի կոմբայնավարներ Հ. Մարտիրոսյանը, Պ. Ալոյանը և ուրիշներ։



Բորբոքելով սոցիալիստական մրցությունը մեխանիզատորների շրջանում, ագիտատորները ագիտացիոն զրույցների ժամանակ, մեր Մեծ Միության մեջ կատարվող աշխատանքային եռուզեռի, միջազգային իրադարձությունների մասին տված տեղեկությունների հետ, որպես կանոն լուսաբանում են իրենց՝ կոմբայնավարների աշխատանքի արդյունքները։ Նրանք խրախուսում են մրցության առաջավորներին, գործնական օգնություն ցույց տալիս հետ մնացողներին, ստեղծում արտադրական-մասսայական վերելք։

Քաղաքական-մասսայական աշխատանքի ծավալման շնորհիվ կոմբայնավար Ն. Վանոյանը ժամկետից շուտ կատարեց իր պարտավորությունը։ Նա հավաքեց և պահեստները հանձնեց շրջանի Արևիկ գյուղի կոլտնտեսության հացահատիկի և կորնգանի սերմացուի առատ բերքը։ Կոմբայնավար Մ. Քոչարյանը շուտով կկատարի իր լրացուցիչ պարտավորությունը։ Մրցության առաջավորների շարքում է քայլում կոմբայնավար Ռ. Սարգսյանը, ձգտելով 50 հեկտարով գերազանցել իր իսկ վերցրած հնձի պարտավորությունը։

Աշխատանքի լավագույն օրինակների ցուցադրման ու խրախուսման հետ ագիտա-

*տորները գործնական օգնություն են ցույց տալիս հետ մնացողներին։*

*Շրջանի Մայիսյան գյուղի կոլտնտեսության դաշտերում աշխատող կոմբայնավար ընկ. Ա. Մաթևոսյանը բերքահավաքի սկզբում թերակատարում էր իր առաջադրանքները։ Ագիտատոր, ագրոնոմ ընկ. Ս. Մելիքյանը նրան մանրամասնորեն ծանոթացրեց առաջավորների աշխատանքի ձևերի ու մեթոդների հետ։ Հետևեց առաջավոր փորձի կիրառման աշխատանքներին, կազմակերպեց մեքենա-տրակտորային կայանի օգնությունը։ Այդպիսով ագիտատոր Ս. Մելիքյանը հասավ իր նպատակին։ Եթե բերքահավաքի սկզբում կոմբայնավար Ա. Մաթևոսյանը հնձում էր օրական 8—10, այժմ հնձում է 20 և ավելի հեկտար հացահատիկային տարածություն։*

*Մեխանիզատորները, շարունակելով մրցությունը, ձգտում են այս տարի նախատեսվածից ավելի հնձել 700 հեկտար։ Կասկածից վեր է, որ նրանք կկատարեն իրենց նոր պարտավորությունը։*

Տ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ախուրյանի ՄՏԿ-ի դիրեկտորի բաղգծով տեղակալ

---

## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ԱՆԱՍՆԱՊԱՀՆԵՐԻ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԻՑ ՊԱՏՎՈՎ ԴՈՒՐՍ ԳԱԼՈՒ ՀԱՄԱՐ

*Կալինինյի շրջանի Պրիվոլնոյե գյուղի կոլտնտեսությունը զգալի հաջողություններ է ձեռք բերել անասնապահության զարգացման բնագավառում։ Կոլտնտեսությունն այժմ ունի 1.939 գլուխ խոշոր և 3.445 մանր եղջերավոր անասուն, այս տարվա համար պլանով նախատեսված 1.740 գլուխ խոշոր և 2.400 մանր եղջերավոր անասունների փոխարեն։ Զգալիորեն գերակատարված է նաև ձիերի և խոզերի գլխաքանակի պլանը։*

*Կոլտնտեսությունն այս տարի լավ ցուցանիշների է հասել նաև անասնաբուծության մթերատվության բարձրացման բնագավառում։ Անցած 7 ամիսների ընթացքում յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվել է 13 ցենտներ կաթ՝ անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում ստացված 8,5 ցենտների փոխարեն, կամ ընդհանուր առմամբ կոլտնտեսությունն ավելի է ստացել մոտ 2.000 ցենտներ կաթ։*

Բայց մեր կոլտնտեսականները չեն հանգստանում ձեռք բերած հաջողություններով։ Ռեսպուբլիկայի առաջավոր անասնապահների խորհրդակցությունից հետո, երբ անասնապահության հետագա զարգացման համար իրար հետ սոցիալիստական մրցության մեջ մտան Ադրբեջանական, Վրացական և Հայկական Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկաների անասնապահության բնագավառի աշխատողները, մեր կոլտնտեսությունում սոցիալիստական մրցությունը նոր թափ ու ծավալ ստացավ։ Կոլտնտեսության անասնապահները պարտավորություն ստանձնեցին անասնաբուծության զարգացման բնագավառում հասնել նոր, ավելի լավ հաջողությունների և պատվով դուրս գալ եղբայրական ռեսպուբլիկաների հետ տեղի ունեցող մրցությունից։

Կոլտնտեսությանը՝ ստանձնած պարտավորությունների կատարման գործում օգնելու համար, պարտկազմակերպության ղեկավարությամբ իր աշխատանքները վերակառուցեց ագիտկոլեկտիվը։ Ագիտատորներին առաջադրանք տրվեց՝ անասնապահների հետ տարվող ագիտացիոն-մասսայական ամբողջ աշխատանքը կազմակերպել անմիջապես նրանց աշխատավայրում, լայնորեն մասսայականացնել առաջավոր անասնա-



պահների փորձը, հասնել այն բանին, որ այդ փորձը անպայման կիրառվի մեր կոլտնտեսությունում։

Անասնապահության ամառային շրջանում կոլտնտեսականների մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը ցույց է տալիս, որ մեր ագիտկոլեկտիվը հաջողությամբ է կատարում պարտկազմակերպության առաջադրանքները։ Յուրաքանչյուր շաբաթ տեղի ունեցող ագիտատորների հավաքներում ամփոփվում է անցած շաբաթվա ընթացքում անասնապահների հետ տարված քաղաքական-մասսայական աշխատանքի արդյունքները և ագիտատորներին առաջադրանքներ տրվում առաջիկա շաբաթվա համար։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և ՀԿ(բ)Պ Կենտկոմի՝ Հայկական ՍՍՌ կոլտնտեսություններում և սովխոզներում 1951 թվականի խոտհունձը ու կերի սիլոսացումն անցկացնելու միջոցառումների մասին որոշումը հրապարակվելուց հետո, մեր ագիտատորներն այն լայնորեն մասսայականացրին կոլտնտեսականների մեջ։ Ինչպես ցույց էր տրված ագիտկոլեկտիվի սեմինար պարապմունքի ժամանակ, այդ որոշումը մասսայականացնելիս ագիտատորները կոլտնտեսականներին կոնկրետ օրինակներով ցույց

են տալիս, թե պարտիայի և կառավարության ցուցումները ինչպես պետք է կիրառել հենց մեր կոլտնտեսությունում, յուրաքանչյուր բրիգադում և օղակում։

Այդ որոշման մասսայականացումը աշխատանքային նոր վերելք առաջ բերեց կոլտնտեսությունում։ Յուրաքանչյուր կոլտնտեսական և կոլտնտեսուհի ձգտում է լավագույն կերպով կատարել հարազատ պարտիայի և կառավարության որոշումը։ Այս ամենի արդյունքը եղավ այն, որ կոլտնտեսությունը հաջողությամբ ավարտեց խոտհունձը և անասնակերի մթերման պլանը։

Ագիտկոլեկտիվում առանձնապես մանրամասն քննության ենք առնում առաջավոր անասնապահների փորձի մասսայականացման հարցը, նշում այն ձևերն ու մեթոդները, որոնք պետք է օգտագործել ամեն մի նոր փորձ մասսայականացնելիս։ Այսպես, օրինակ, մեր կոլտնտեսության անվանի կթվորուհի Վարյա Զախարովան, որի խնամած կովերը իրենց կաթնատվությամբ շրջանի լավագույն կովերից են, հորթերին լավ խնամելու շնորհիվ հասել է այն բանին, որ երինջները ծնում են երկու և կես—երեք տարեկան հասակում։

Կթվորուհի Զախարովայի աշխատանքի մե-



թոդները, նրա ձեռք բերած հաջողությունները մանրամասն ուսումնասիրելուց հետո, ագիտատորները սկսեցին լայնորեն մասսայականացնել այն։ Նրանք կոլտնտեսականներին համոզիչ փաստերով և օրինակներով պատմում էին, որ Զախարովայի հաջողությունները պատահական երևույթ չեն, որ նա դրանց հասել է իր նվիրված աշխատանքի, սովետական առաջավոր բիոլոգիայի սկզբունքներով առաջնորդվելու շնորհիվ։ Եվ ահա ագիտատորների կատարած այս աշխատանքի հետևանքն այն եղավ, որ բազմաթիվ անասնապահներ ցանկություն հայտնեցին հետևել անվանի կթվորուհի Վ. Զախարովայի օրինակին։ Կոլտնտեսության վարչությունը այժմ 35 հորթեր հանձնել է մի շարք անասնապահների, որոնք նրանց խնամքը կազմակերպում են Զախարովայի օրինակով։

Կոլտնտեսականների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանք կազմակերպելու համար պետք է լայնորեն օգտագործել կոլտնտեսությունում եղած բոլոր միջոցները։ Այդ տեսակետից նույնպես մեր ագիտկոլեկտիվը որոշ փորձ ունի։ Այսպես, օրինակ, մեր կոլտնտեսության կուլտուրայի տունն ստանում է բավարար քանակությամբ թերթեր և ժուռնալներ։ Ամեն օր ագիտատորներն այդ թերթերն ու ժուռնալ-

ները կարդում են իրենց ունկնդիրների համար: Կուլտուրայի տունն ունի նաև ռադիոհանգույց: Պարտկազմակերպության հանձնարարությամբ ագիտատորները հաճախակի կազմակերպում են առաջավոր անասնապահների ելույթները միկրոֆոնի մոտ, ուր նրանք պատմում են իրենց աշխատանքի փորձի մասին:

Գյուղի հրապարակում կա գեղեցիկ կերպով ձևավորված ցուցանիշների տախտակ, որի վրա ամեն օր գրվում են կոլտնտեսության բրիգադների նախորդ օրվա աշխատանքի արդյունքները: Այդ աշխատանքը տանում է կոմերիտական ագիտատոր Սիմյոն Սեմյոնովը: Առաջավորներին խրախուսելու և հետ մնացողներին կշտամբելու համար, բրիգադների աշխատանքների ցուցանիշների հրապարակումը մեծ նշանակություն ունի:

Այդ կարելի է ցույց տալ հետևյալ օրինակով: Խոտհնձի վերջին շրջանում № 8 բրիգադը թուլացրեց իր աշխատանքները: Ցուցանիշների տախտակի վրա այդ տեսնում էին բոլոր կոլտնտեսականները և խստորեն քննադատում № 8 բրիգադին: Քննության առնելով այդ բրիգադի հարցը, կոլտնտեսության պարտկազմակերպությունը նշեց, որ նրա հետ մնալու պատճառը բրի-



գադում տարվող ագիտացիոն-քաղաքական աշխատանքի թուլացումն է: Պարտկազմակերպության հանձնարարությամբ բրիգադի ագիտատորներն սկսեցին ավելի մոտիկից ըզբաղվել կոլտնտեսականների աշխատանքով, բացատրեցին, թե բրիգադի հետ մնալը ինչ հետևանքներ կարող է ունենալ կոլտնտեսության ստանձնած պարտավորությունների կատարման համար, ցույց տվեցին, թե ինչպես են աշխատում առաջավոր բրիգադները: Ագիտացիոն-քաղաքական աշխատանքի ուժեղացումը տվեց իր լավ արդյունքները. № 8 բրիգադը սկսեց կատարել և գերակատարել խոտհնձի պլանները:

Ահա այսպես մեր ագիտկոլեկտիվը օգնում է կոլտնտեսականներին անասնապահության պետական առաջադրանքները կատարելու, անդրկովկասյան եղբայրական ռեսպուբլիկաների անասնապահության բնագավառի աշխատողների միջև տեղի ունեցող սոցիալիստական մրցությունից պատվով դուրս գալու համար:

Պ. ՏԻՄՈՖԵԵՎ

Կալինինոյի շրջանի Պրիվոլնոյե գյուղի կոլտնտեսության ագիտկոլեկտիվի ղեկավար

# ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿԻ ԱՄԵՆԱԿԵՆՍՈՒՆԱԿ ԵՎ ԱՆՀԱՂԹԱՀԱՐԵԼԻ ՇԱՐԺՈՒՄԸ

*Տասնվեց տարի առաջ, 1935 թվականի օգոստոսի 31-ին Դոնբասում, սկիզբ դրվեց այն մեծ շարժման, որն ընկեր Ստալինը բնութագրեց, որպես մեր ժամանակի ամենակենսունակ և անհաղթահարելի շարժում, որը կոչված է ռևոլյուցիա կատարել սոցիալիստական արդյունաբերության մեջ։*

*Ստախանովյան շարժումն աներևակայելի արագությամբ ծավալվեց ամբողջ երկրում, այն թափանցեց արդյունաբերության բոլոր ճյուղերը, թափանցեց կոլտնտեսական գյուղը։*

*Ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակցությունում ընկեր Ստալինը, խոսելով ստախանովյան շարժման առանձնահատկությունների և հեռանկարների մասին, ասաց, որ այդ շարժման առանձնահատկությունը կայանում է ամենից առաջ նրանում, որ նա արտահայտում է սոցիալիստական մրցության նոր վերելքը, սոցիալիստական մրցության նոր, ավելի բարձր էտապը։ Այդ էտապը բնութագրվում է նոր տեխնիկայի հետ ունեցած նրա անխախտ կապով։*

*«Այդ շարժումը,— ասում է ընկեր Ստալինը,— խորտակում է տեխնիկայի վերաբերյալ հին հայացքները, խորտակում է տեխնիկական հին նորմաները, նախագծային հին կարողությունները, արտադրական հին պլանները և պահանջում է նոր, ավելի բարձր տեխնիկական նորմաներ, նախագծային կարողություններ, արտադրական պլաններ ստեղծել։ Նա կոչված է ռևոլյուցիա կատարելու մեր արդյունաբերության մեջ։ Այդ իսկ պատճառով նա, ստախանովյան շարժումն, իր հիմքում խորապես ռևոլյուցիոն է»։*

*Անցած տասնվեց տարիները փայլուն կերպով հաստատեցին ընկեր Ստալինի իմաստուն կանխագուշակման ճշմարտությունը։ Ստախանովյան շարժումը, որ հանդիսացավ սոցիալիստական մրցության բարձրագույն*

ձևը, գնալով լայն թափ ու ծավալ ստացավ, այն վեր ածվեց բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական վերելքի հզոր միջոցի, ինդուստրիայի զարգացման հզոր միջոցի և նոր ուղիներ բացեց դեպի կոմունիզմի լուսաշող ապագան։

Ստախանովյան շարժման ծավալման շնորհիվ ժամկետից շուտ կատարվեց երկրորդ հնգամյակը և պայմաններ ստեղծվեցին աշխատավորների բարեկեցության և կուլտուրական զարգացման նոր վերելքի համար։ Բավական է ասել, որ բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը երկրորդ հնգամյակի ընթացքում աճեց ավելի քան երկու անգամ։ Ստախանովյան շարժումը վիթխարի դեր կատարեց նաև հետագա տարիներին, միշտ ընդոծնելով ավելի կատարելագործված ձևեր ու մեթոդներ։ Ստախանովյան շարժումը մեծագույն դեր կատարեց Հայրենական պատերազմի տարիներին մեր երկրի տնտեսական և ռազմական հզորությունն էլ ավելի ամրապնդելու և գերմանա-ֆաշիստական զավթիչների ու ճապոնական իմպերիալիստների դեմ հաղթանակն ապահովելու համար։

Հայրենական պատերազմի հաղթական



ավարտումից հետո, մեր երկիրն անցավ խաղաղ ստեղծագործական աշխատանքի։ Մեծ Ստալինի կոչով սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ հետպատերազմյան առաջին հնգամյակի կենսագործմանը։ Հանդես եկան ստախանովականների նորանոր նախաձեռնություններ, հռչակվեցին նորանոր մարդկանց անուններ, որոնք հանդիսացան կոլեկտիվ ստախանովյան աշխատանքի, հումքի տնտեսման, արտադրանքի բարձր որակի համար պայքարի նախաձեռնողներ։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար մրցության կոչ արին մեր դարաշրջանի դրոշակակիր Մոսկվայի աշխատավորները։ Նրանց արձագանքեցին երկրի բոլոր քաղաքների և արդյունաբերական կենտրոնների բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, ծառայողները։ Մրցությունն ստացավ համաժողովրդական բնույթ։

Պանծալի ստախանովականներ Մատրոսովը, Իվանովը, Ռոսսիյսկին, Վորոշինը, Զուևկիխը, Կոնոնենկոն, Կորաբելնիկովան, Կովալյովը և մյուսները հանդիսացան հայրենասիրական նոր գործերի հեղինակներ և դրանով հսկայական ծառայություն մատուցեցին մեր ժամանակի ամենակենսունակ

և անհաղթահարելի շարժումն ավելի հզո-
րացնելու, ավելի բարձրացնելու համար:
Ստախանովյան հզոր շարժումն ավելի
ամրապնդեց մեր երկիրը, ապահովեց հետ-
պատերազմյան հնգամյակի ժամկետից շուտ
կատարումը: Իրականացան մեծ Ստալինի
մարգարեական խոսքերը, որ նա ասաց ըս-
տախանովյան շարժման օրրանի մոտ, 16
տարի առաջ: Մեծ առաջնորդն ասաց.
«Այսօր դեռ ստախանովականները քիչ են,
բայց ո՞վ կարող է կասկածել, որ վաղը նը-
րանք տասնապատիկ ավելի կլինեն»:
Մեր երկրում Մոսկվայի Լ. Մ. Կագանո-
վիչի անվան գնդակավոր առանցքակալների
գործարանը առաջիններից մեկն էր,
որ ստացավ ստախանովյան ձեռնարկության
կոչում: Այդ պատվավոր կոչում է: Այդ նշա-
նակում է, որ գործարանի բազմահազար կո-
լեկտիվը սրբությամբ է կատարում ընկեր
Ստալինի ցուցումը և իր ամբողջ ուժերն է
լարում կոմունիզմի կառուցմանը ավելի լավ
օժանդակելու համար:
Վերջերս հայրենասիրական նոր նախա-
ձեռնությամբ հանդես եկան Մոսկվայի
«Բուրևեստնիկ» կոշիկի ֆաբրիկայի ստա-
խանովականներ Մարիա Լևչենկոն և Գրիգորի
Մուխանովը: Նրանք առաջարկություն են
մտցրել սոցիալիստական մրցություն ծավա-



լել յուրաքանչյուր արտադրական օպերացիա-
յի ընթացքում արտադրանքի ինքնարժեքն ի-
ջեցնելու համար: Հաշվելով իրենց հնարավո-
րությունները, Լևչենկոն որոշել է բոլոր ցու-
ցանիշների բարելավման միջոցով տարեկան
տնտեսել 34.000 ռուբլի, իսկ Մուխանովը՝
9.500 ռուբլի: «Բուրևեստնիկ» ֆաբրիկայի
ստախանովականների նախաձեռնությունը
հնարավորություն է տալիս բոլոր բանվորնե-
րին մասնակից դառնալու արտադրանքի
ինքնարժեքի իջեցման մրցությանը: Մոսկվա-
յի ստախանովականների այդ նախաձեռնու-
թյունն այժմ լայնորեն ծավալվում է ոչ
միայն երկրի թեթև արդյունաբերության մեջ,
այլև ամենուրեք:
Մոսկվացիների օրինակով արտադրանքի
ինքնարժեքի իջեցման համար մրցություն են
սկսել նաև Սովետական Հայաստանի ար-
տադրական ձեռնարկությունները:
Ստախանովյան շարժումը նոր թափ ու
ծավալ ստացավ վերջին տարվա ընթացքում,
այն բանից հետո, երբ հրապարակվեցին Սո-
վետական կառավարության որոշումները՝
Վոլգա, Դոն, Դնեպր, Ամու-Դարիա գետերի
վրա կոմունիզմի մեծ կառույցումների՝ հսկա
հիդրոէլեկտրակայանների, ոռոգիչ սիստեմ-
ների շինարարությունների սկսելու մասին:

Երկրի արդյունաբերական ձեռնարկություններում, երկաթուղիներում համաժողովրդական շարժում ծավալվեց կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները ժամկետից շուտ կատարելու, ստալինյան նախագծումները կենսագործելու համար։

Այդ մեծ գործին անսահման խանդավառությամբ են մասնակցում նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը և ստախանովյան շարժումը, ժամկետից շուտ են կատարում կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները։

Որպես օրինակ կարելի է վերցնել Երևանի «Ավտոդետալ» գործարանի կոլեկտիվի աշխատանքը։ Ստախանովյան շարժման լայն ծավալման շնորհիվ գործարանը արտադրանքի թողարկումը, անցյալ տարվա համեմատությամբ, ավելացրել է 80 տոկոսով, սիստեմատիկ կերպով ժամկետից շուտ է կատարում կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները։ Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի հիանալի օրինակներ են ցույց տալիս գործարանի անվանի ստախանովականներ Վ. Սահակյա-



նը, Մ. Գասպարյանը, Գ. Ժամկոչյանը, Զ. Սողոյանը, Մ. Հարությունյանը և շատ ուրիշներ։

Առաջ գնալով ստախանովյան շարժման՝ մեր ժամանակի ամենակենսունակ և ամենաանհաղթահարելի շարժման ճանապարհով, Սովետական Հայաստանի արդյունաբերության, տրանսպորտի, նորակառույցների աշխատողները, կոլտնտեսականները կրկնապատկված եռանդով ավելի լայնորեն, ավելի խորը կծավալեն սոցիալիստական մրցությունը հանուն մեր Հայրենիքի է՛լ ավելի ծաղկման ու բարգավաճման, հանուն կոմունիզմի լիակատար հաղթանակի։

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ։

# ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ

(Սկիզբը № 15-ում)

**Պետական կարգը։** *Ամերիկայի Միացյալ Նահանգների համար առանձնապես բնորոշ է պետական ապարատի սերտաճումը խոշոր ֆինանսական կապիտալի հետ, մի բան, որ հատուկ է բոլոր կապիտալիստական երկրներին։ Ձևականորեն ԱՄՆ-ը բուրժուական դեմոկրատական ռեսպուբլիկա է։ Սակայն նրա այդ արտաքուստ դեմոկրատական ֆասադի հետևում թաքնված է կապիտալիստական մոնոպոլիաների հրեշավոր դիկտատուրան. «...Ոչ մի տեղ,— ասում էր Վ. Ի. Լենինը,— կապիտալի իշխանությունը, մի բուռ միլիարդատերերի իշխանությունը ամբողջ հասարակության նկատմամբ այնքան բիրտ, այնքան բացահայտ կաշառվածությամբ չի դրսևորվում, ինչպես Ամերիկայում» (Երկեր, հ. 29, 4-րդ հրատ. էջ 449)։*

*ԱՄՆ-ում պետական իշխանությունը բաժանվում է օրենսդրական, գործադիր և դատական իշխանությունների։ Կոնստիտուցիայի համաձայն օրենսդրական իշխանությունը պատկանում է կոնգրեսին, որը կազմված է երկու պալատից՝ ներկայացուցիչների*



*պալատից և սենատից։ Առաջին պալատն ընտրվում է երկու տարով, յուրաքանչյուր նահանգի բնակչության թվին համեմատ։ Սենատը կազմված է 96 սենատորից՝ երկուական հոգի յուրաքանչյուր նահանգից, և երկու տարին մեկ անգամ նորացվում է մեկ երրորդով։*

*Ամերիկյան կոնգրեսում նստում են ոչ թե ամերիկյան ժողովրդի ներկայացուցիչները, այլ՝ Ուոլ-ստրիտի ներկայացուցիչները։ Օրինակի համար նշենք այն կապը, որ գոյություն ունի ամերիկյան սենատի ու կառավարության որոշ անդամների և մոնոպոլիաների միջև. սենատոր Տաֆտը Օհայո նահանգի մետալուրգիական մագնատների դրածոն է, սենատոր Կոննոլին ներկայացնում է գլխավորապես Տեխասի նավթարդյունաբերողների շահերը, սենատոր Վանդենբերգը՝ ավտոմոբիլային գործարանների շահերը և այլն։*

*ԱՄՆ-ում բոլոր պետական պաշտոններում նշանակվում են բացառապես խոշոր կապիտալի ներկայացուցիչներ և նրա դրածոներ։ Պետական քարտուղար (արտաքին գործերի մինիստր) Դին Աչեսոնը կապված է մի խոշոր փաստաբանական ֆիրմայի հետ, որն սպասարկում է Մորգանին և Ռոկֆելլերին։ Ֆինանսների մինիստր Սնայդերը խոշոր բանկիր է՝ Սեն-լուիից և այլն։*

*ԱՄՆ-ում պրեզիդենտը հանդիսանում է պետության ղեկավարը և գործադիր իշխանության՝ կառավարության ղեկավարը։ Նա ընտրվում է 4 տա-*

րով՝ անուղղակի ընտրությունների հակադեմոկրա-
տական սիստեմով, երբ բնակչությունն ընտրում է
ընտրողներ, որոնք քվեարկում են պրեզիդենտության
թեկնածուներին։ Գոյություն չունի պրեզիդենտի պա-
տասխանատվություն՝ ընտրողների առաջ։

ԱՄՆ-ի ամբողջ դատական սիստեմը խիստ ռեակ-
ցիոն է։ Գերագույն դատարանն իր ամբողջ գոյու-
թյան ընթացքում պաշտպանում է խոշոր կապիտալի
շահերը։ Նահանգների դատավորների կոնֆերենցիա-
յում ԱՄՆ-ի Գերագույն դատարանի նախագահ Վին-
սոնը պահանջում էր, որ նրանք գործեն «բիզնեսին
համապատասխանող մեթոդներով», այսինքն՝ կապի-
տալիստների շահերին համապատասխան։ Վերջին
տարիներին Գերագույն դատարանը կայացրել է մի
շարք դատավճիռներ, որոնք խրախուսում են նեգրերի
սպանությունները, նրանց նկատմամբ գործադրվող
բռնությունները։ Ամբողջ առաջադեմ մարդկությունը
զայրույթով ընդունեց այն լուրը, որ Գերագույն դա-
տարանը հաստատել է ԱՄՆ-ի կոմունիստական պար-
տիայի 11 ղեկավարների նկատմամբ կայացված դա-
տավճիռը։

Ամերիկյան բուրժուական «դեմոկրատիայի» բնո-
րոշ գիծն այսպես կոչված երկպարտիական սիստեմն
է, որի օգնությամբ Ուոլ-ստրիտի մագնատները կա-
ռավարում են երկիրը։

Այդ սիստեմի էությունն այն է, որ ԱՄՆ-ի պե-
տական ապարատի ղեկի մոտ հերթով իրար փոխա-
րինում են խոշոր կապիտալի երկու պարտիաների՝



դեմոկրատական և ռեսպուբլիկական պարտիաների
պարագլուխները։ Այդ պարտիաներից յուրաքանչյու-
րը սերտորեն կապված է մոնոպոլիստական կապի-
տալի իր որոշ խմբերի հետ, որոնց շահերն էլ պաշտ-
պանում է առաջին հերթին։ Դրա համար թե՛ դեմոկ-
րատական և թե՛ ռեսպուբլիկական պարտիաները
ֆինանսական առատ օգնություն են ստանում այն
խմբերից, որոնց գործակալությունն են հանդիսանում
իրենք։

Դեռ Ֆ. Էնգելսը այդ պարտիաները բնորոշել է որ-
պես քաղաքական սպեկուլյանտների երկու խոշոր
բանդա։

Այն պայքարը, որ տեղի է ունենում դեմոկրատա-
կան և ռեսպուբլիկական պարտիաների միջև ընտրու-
թյունների ժամանակ, ըստ էության պայքար է
ԱՄՆ-ի ֆինանսա-մոնոպոլիստական ախոյան կլիկ-
ների միջև, որ մղվում է կառավարության և պե-
տական ապարատի մեջ ազդեցիկ լինելու համար։

Միևնույն ժամանակ խոշոր կապիտալի երկու պար-
տիայի առկայությունը երկրում՝ չափազանց ձեռնտու է
ամերիկյան բուրժուազիայի համար, քանի որ դա հնա-
րավորություն է տալիս նրան դեմոկրատիայի տեսիլք,
միջպարտիական պայքարի տեսիլք ստեղծել ԱՄՆ-ի
ժողովրդական մասսաների աչքում, ընտրողների ձայ-
ները կիսել այդ երկու պարտիաների միջև և ընտրող-
ների ուշադրությունը շեղել մյուս պարտիաներին
պաշտպանելուց։

«...մենք մեծ տարբերություն չենք տեսնում ռեսպուբլիկականների և դեմոկրատների միջև»,— ասել է ընկեր Ստալինը ԱՄՆ-ի ռեսպուբլիկական պարտիայի գործիչ Ստասսենի հետ ունեցած զրույցում։

Ամերիկյան կոնգրեսի ներկա կազմում դեմոկրատները մեծամասնություն են կազմում ռեսպուբլիկականների հանդեպ։ Բայց ինչպես դեմոկրատական, այնպես էլ ռեսպուբլիկական պարտիաները հավասարապես ակտիվ կերպով մասնակցում են ԱՄՆ-ի կառավարող շրջանների հակաժողովրդական, մինչև ուղն ու ծուծը ռեակցիոն ներքին քաղաքականության և արտաքին ագրեսիվ քաղաքականության անցկացմանը, սանձարձակ պատերազմի պատրաստմանը ընդդեմ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի։

Դեմոկրատները և ռեսպուբլիկականները լայնորեն դիմում են պայքարի անդրկուլիսային կեղտոտ մեթոդների, ներառյալ ընտրողների ձայների գնումը, կեղծ ցուցակներ կազմելը, ահաբեկելը։ Երկու պարտիաներն էլ սերտորեն կապված են հանցագործ միջավայրի հետ, գանգստերների (բանդիտների) հետ, դիմում են նրանց օգնությանը և հովանավորում նրանց։

Ամերիկյան միլիոնավոր քաղաքացիների, որոնք ձևականորեն, կոնստիտուցիայի համաձայն, ձայնի իրավունք ունեն, փաստորեն թույլ չի տրվում մասնակցել ընտրություններին։ Կառավարող դասակարգերն օգտագործում են ամեն տեսակի սահմանափակումներ՝ գույքային ցենզ, ընտրական հարկ, կրթության ցենզ, նստակեցության ցենզ, ինչպես նաև դիմում են ամեն տեսակի սպառնալիքների ու բռնությունների՝ միլիոնավոր աշխատավորների ընտրություններից հեռու պահելու համար։ Սովորաբար ընտրություններին մասնակցում է ձևականորեն ձայնի իրավունք ունեցող քաղաքացիների կեսից պակաս մասը։ 1950 թվականին կոնգրեսի ընտրություններին մասնակցեց միայն 40 միլիոն մարդ՝ 98 միլիոնի փոխարեն։ Ներկայիս պրեզիդենտ Տրումենի օգտին 1948 թվականին ձայն տվեց ընտրողների ընդհանուր թվի 25 տոկոսից մի փոքր ավելին ։ Ընդորում հաշվի պետք է առնել այն, որ քվեարկության մեքենան ամբողջովին բուրժուազիայի ձեռքումն է, որը չի քաշվում ոչ մի միջոցից, իր նպատակին հասնելու, այն է՝ իրեն հարկավոր թեկնածություններն անցկացնելու համար։



***

Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո ամերիկյան իմպերիալիստները ագրեսիվ նոր պատերազմի, համաշխարհային տիրապետության հասցնող պատերազմի նախապատրաստման ու հրահրման կուրս են վերցրել։ Այդ խարդախ մտադրությանն էլ ենթարկված են ներկայումս ԱՄՆ-ի կառավարող շրջանների արտաքին քաղաքականության բոլոր ակտերը՝ երկարատև և կայուն խաղաղություն հաստատելու վերաբերյալ Սովետական կառավարության բազմիցս առաջարկների մերժումը, ռազմական ագրեսիվ բլոկների ստեղծումը, Արևմտյան Գերմանիայի վերառազ-

մականացումը, դեմոկրատական լագերի երկրներին շրջապատող ռազմական բազաների սիստեմի ստեղծումը երկրագնդում։ Այդ բազաների թիվն ավել է 500-ից։ Ամերիկյան իմպերիալիզմը նոր պատերազմի պատրաստումից անցյալ տարի անցավ ագրեսիվ գործողությունների ընդդեմ կորեական ժողովրդի և Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի։

Ամերիկյան իմպերիալիստները նոր չէ, որ զավանցական պլաններ են կազմում ամբողջ աշխարհի վրա իրենց տիրապետությունը հաստատելու համար։ Վ. Ի. Լենինը դեռ 1917 թվականին, իր «Պատերազմ և ռեվոլյուցիա» դասախոսության մեջ բերեց ամերիկյան միլիարդատերերի մի օրգանի հետևյալ անամոթորեն բացահայտ հայտարարությունը. «Աշխարհին տիրապետելու համար հարկավոր է ունենալ երկու բան՝ դոլլարներ և բանկեր»։ (Երկեր, հ. 24, 4-րդ հրատ., էջ՝ 508)։

Եվ որովհետև ԱՄՆ-ի՝ համաշխարհային տիրապետություն հաստատելու ճանապարհին գլխավոր խոչընդոտ է հանդիսանում Սովետական Միությունը, այդ պատճառով էլ ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ քաղաքականությունն ուղղված է, առաջին հերթին, մեր Հայրենիքի դեմ՝ ամբողջ աշխարհի խաղաղության պատվարի դեմ։ Համաշխարհային տիրապետության ամերիկյան հավակնորդները Սովետների երկրի գոյության դեռ առաջին օրերից գազանային ատելություն են տածում նրա նկատմամբ։ Այդ ԱՄՆ-ի



կառավարող շրջաններն էին, որ 1917 թվականին քաղցի բլոկադա կազմակերպեցին Սովետական Ռուսաստանի շուրջը։ ԱՄՆ-ի պրեզիդենտ Վիլսոնն է եղել երիտասարդ Սովետական ռեսպուբլիկայի դեմ իմպերիալիստական ինտերվենցիայի գլխավոր կազմակերպիչներից մեկը։ Ամերիկյան ինտերվենտները թալանել են մեր երկրի Հյուսիսը և Սիբիրը։ Ամերիկյան զորքերը գազանաբար սպանել և տանջել են տասնյակ հազար ռուսների։

Համաշխարհային երկու պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանում ամերիկյան միլիարդատերերը ակտիվ կերպով օգնում էին հիտլերյան Գերմանիայի ռազմա-տնտեսական պոտենցիալի վերականգնմանը, նրան խոշոր փոխառություններ տրամադրելով։ Այդ նրանք էին, որ հիտլերյան Գերմանիային պատերազմի գրգռեցին Սովետական Միության դեմ։

«Ամերիկյան դոլլարների այդ ոսկե անձրևը բեղմնավորեց հիտլերյան Գերմանիայի ծանր արդյունաբերությունը և, մասնավորապես, ռազմական արդյունաբերությունը։ Անգլո-ամերիկյան մոնոպոլիաների կողմից հիտլերյան Գերմանիայի ռազմական էկոնոմիկայի մեջ ներդրված ամերիկյան այդ միլիարդ դոլլարները վերակենդանացրին գերմանական ռազմական պոտենցիալը և հիտլերյան ռեժիմի ձեռքը տվին նրա ագրեսիան իրագործելու համար անհրաժեշտ զենքը»։ («Պատմության կեղծարարները։ Պատմական տեղեկանք»։ Հայպետհրատ, 1948 թ., էջ 12)։

Ամերիկյան իմպերիալիստները ամեն կերպ ջանում էին ձգձգել համաշխարհային երկրորդ պատերազմը, որը հսկայական գերշահույթների աղբյուր էր իրենց համար։ Նրանք ուխտադրուժ, դավաճանական քաղաքականություն էին վարում Սովետական Միության նկատմամբ, ձգտելով արյունաքամ անել, թուլացնել նրան՝ ֆաշիստական Գերմանիայի հետ երկարատև մենամարտում։

Ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության կենսագործման միջոցներից են ամերիկյան ստրկացուցիչ փոխառությունները և ուրիշ երկրներին ցույց տրվող այսպես կոչված «օգնության» այլ ձևերը։ Ամերիկյան փոխառությունները ոչ միայն հարստացման միջոց են, այլև պայքարի զենք՝ համաշխարհային տիրապետության համար, ուրիշ երկրների տնտեսական ու քաղաքական ստրկացման միջոց, պատերազմի պատրաստման մի կարևոր լծակ։

Ամերիկյան իմպերիալիզմը, վաշխառուի նման օգտվելով արևմտա-եվրոպական երկրների հետպատերազմյան դժվարություններից, այդ երկրների վզին փաթաթեց իր «օգնությունը»՝ այսպես կոչված «Մարշալլի պլանի» ձևով։ Հենվելով արևմտա-եվրոպական պետությունների կառավարությունների դավաճանական քաղաքականության վրա, որոնք «Մարշալլի պլանի» լուծը դրին իրենց երկրների վզին, ամերիկյան իմպերիալիստները մարշալլականացված երկրները առան ստրկացուցիչ պարտավորությունների ցանցի մեջ։ Դրանով իսկ նրանք իրենց ենթարկեցին այդ երկր-



ները՝ թե տնտեսապես և թե քաղաքականապես։ «Մարշալլի պլանը» չհասցրեց, և չէր կարող հասցնել, արևմտա-եվրոպական երկրների՝ պատերազմի հետևանքով քայքայված էկոնոմիկայի վերականգնմանը, ինչպես այդ մասին թմբկահարում էին իմպերիալիստները և նրանց լակեյները։ Ընդհակառակը, «Մարշալլի պլանը» հասցրեց նրան, որ խեղդեց արևմտա-եվրոպական երկրների արդյունաբերության մի շարք ճյուղերը, իսկ մյուս ճյուղերը ենթարկեց ամերիկյան մոնոպոլիստներին։ «Մարշալլի պլանը» ԱՄՆ-ի և արևմտա-եվրոպական երկրների աշխատավորների հաշվին հարստանալու մի լրացուցիչ աղբյուր եղավ ամերիկյան մոնոպոլիստների համար, և արևմտա-եվրոպական երկրները վաճառահանության շուկա դարձրեց ամերիկյան չվաճառվող ապրանքների համար։

1949 թվականին ամերիկյան իմպերիալիստները կազմեցին Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկը, որի մեջ, բացի ԱՄՆ-ից, մտան՝ Անգլիան, Ֆրանսիան, Բելգիան, Հոլլանդիան, Կանադան, Լյուքսեմբուրգը, Իտալիան, Իսլանդիան, Նորվեգիան, Դանիան և Փորթուգալիան։ Ատլանտյան դաշինքում տեր ու տնօրեն են հանդիսանում ամերիկյան մոնոպոլիաների դրածոները, որոնք ձգտում են համաշխարհային նոր պատերազմի հրահրմանը և ԱՄՆ-ի տիրապետության հաստատմանը՝ ամբողջ աշխարհում։ Ուոլ-ստրիտի պարագլուխները Անգլիային, Ֆրանսիային, Իտալիային և Ատլանտյան դաշինքի մյուս մասնակիցներին

հատկացնում են ռազմական պլացդարմ լինելու և «Ծնդանոծային մխս» մատակարարելու դերը՝ իրենց կողմից հրահրվող պատերազմի համար։ Հյուսիս-ատլանտյան բլոկի մասնակից երկրների հաճոյակատար կառավարությունները արդեն այժմվանից իրենց երկրների տերիտորիան տրամադրել են ամերիկյան զորքերը տեղավորելու, այնտեղ ամերիկյան ռազմածովային և ռազմա-օդային բազաներ ստեղծելու համար, Անգլիան, Ֆրանսիան, Իսլանդիան և մյուս երկրները փաստորեն օկուպացվել են ամերիկյան զորքերի կողմից։ Ամերիկյան իմպերիալիստները եվրոպական երկրների զինվորներից ստեղծում են այսպես կոչված Հյուսիս-ատլանտյան դաշինքի միավորված զինված ուժեր, որոնց հրամանատարներն են լինելու ամերիկյան գեներալ էյզենհաուերը և ամերիկյան ռազմամոլների մյուս ներկայացուցիչները։ Ամերիկյան իմպերիալիստների մտադրությամբ այդ ագրեսիվ բանակի կորիզը պետք է կազմեն Արևմտյան Գերմանիայում նրանց կողմից վերածնվող ռազմական միավորումները։

***

Դեռ 19-րդ դարի վերջերից ԱՄՆ-ը բռնել է գաղութային կողոպուտների և զավթումների ուղին։ ԱՄՆ-ը իր գաղութային կայսրությունն ստեղծել է ուրիշի տերիտորիաները բռնությամբ զավթելու ճա-



նապարհով։ ԱՄՆ-ի գաղութներն են՝ Պանամայի ջրանցքի գոտին, Պուէրտո—Ռիկո կղզին, Վիրգինյան կղզիները, Ալյասկան, Հավային, Խաղաղօվկիանոսյան մի շարք կղզիներ (Գուամ, Ուէյկ և այլն)։ Փաստորեն ԱՄՆ-ի գաղութներ են շարունակում մնալ և Ֆիլիպինները, որոնց 1946 թվականին ձևականորեն «անկախություն» տրվեց։

Ամերիկյան մոնոպոլիստները գաղութները դարձրել են իրենց հարստացման աղբյուր։ Գաղութները ամերիկյան արդյունաբերության հումքային կցորդներն են։ Գաղութներում զարգացվում է տնտեսության մեկ-երկու ճյուղ, որն ամենից ավելի եկամտաբեր է ամերիկյան կապիտալի համար։ Այսպես, օրինակ՝ Պուէրտո—Ռիկո կղզին վեր է ածվել ամերիկյան շաքարի տրեստների հարստացման աղբյուրի, Ալյասկան մատակարարում է ձուկ, լեռնահանք և այլն։

Ամերիկյան գաղութների աշխատավորները դաժան շահագործման են ենթարկվում։ Պուէրտո-Ռիկոյի ամբողջ բնակչության մոտ 86 տոկոսը շատ աղքատ վաստակ է ստանում՝ տարեկան ոչ ավելի, քան 340 դոլլար։ Բնակչության երեք քառորդ մասը ցնցոտիների մեջ է. սոսկալի տառապանքներ է կրում քաղցից և հիվանդություններից։ Ալյասկայի բնիկների մեջ տուբերկուլյոզից առաջացող մահացությունները 13 անգամ շատ են, քան ԱՄՆ-ում։

Մոտ 150 տարվա ընթացքում Միացյալ Նահանգնե-

իր, դիվանագիտական խորամանկությունների և սպառնալիքների օգնությամբ, ինչպես նաև զենքի միջոցով, լիովին իրենց ազդեցությանն են ենթարկել լատինա-ամերիկյան երկրները, այսինքն՝ Հարավային և Կենտրոնական Ամերիկայում գտնվող երկըրները։ Այդ երկրներն են՝ Արգենտինան, Բրազիլիան, Բոլիվիան, Չիլին, Կոլումբիան, Կոստա-Ռիկան, Էկվադորը, Մեքսիկան և այլն։

«Միջամերիկյան» համագործակցության կեղծ-ֆրազների տակ՝ ԱՄՆ-ը հետևողականորեն իրագործում է լատինա-ամերիկյան երկրների գաղութային ստրկացման քաղաքականությունը, արևմտյան կիսագնդում ըստեղծելով մի ագրեսիվ բլոկ՝ այն պետություններից, որոնք ամբողջովին հլու հնազանդ են Ուոլ-ստրիտի պարագլուխների կամքին։

Լատինա-ամերիկյան երկրների կառավարող շըրջանների դավաճանական քաղաքականության հետևանքով՝ այդ երկրները սոսկ ձևականորեն են անկախ երկրներ համարվում։ Իրականում դրանք բոլորն էլ տնտեսական, քաղաքական և ռազմական կախում ունեն Միացյալ Նահանգներից։ Ամերիկյան իմպերիալիստները լրիվ տնօրինում են լատինա-ամերիկյան երկրների բնական հարստությունները, նրանց տերիտորիայում կառուցում են իրենց ռազմական բազաները։ Ամերիկյան մոնոպոլիաների ձեռքում է գտնվում Վենեսուելայի, Կոլումբիայի, Պերուի, Բոլիվիայի և Պարագվայի նավթի համարյա ամբողջ



հանույթը։ Ամերիկյան ֆիրմաները պղնձի և սելիտրայի հանքերի մշակման կոնցեսիաներ ունեն Չիլիում, մարգանեցի հանքեր՝ Բրազիլիայում և այլն։

«Պրավդայի» թղթակցի հետ ունեցած զրույցի ժամանակ ընկեր Ստալինը տվեց ԱՄՆ-ի շահերին ենթարկված այն դերի վառ բնութագրումը, որ կատարում են Միավորված Ազգերի Կազմակերպությունում լատինա-ամերիկյան երկրների դելեգատները։ Ընդգծելով, որ Լատինական Ամերիկայի պետությունները, Հյուսիս-ատլանտյան բլոկի անդամների հետ միասին, մտնում են ՄԱԿ-ի ագրեսորական միջուկի մեջ, ընկեր Ստալինը նշեց՝ «Ոչ ոքի համար գաղտնիք չէ այն փաստը, որ Լատինա-ամերիկյան քսան երկրների 20 ներկայացուցիչներն այժմ ներկայացնում են Ամերիկայի Միացյալ Նահանգների առավել համախըմբված և հլու-հնազանդ բանակը ՄԱԿ-ում»։

«Վիլսոնի իդեալականացված դեմոկրատական ռեսպուբլիկան,— գրել է Վ. Ի. Լենինը,— իրականում եղավ ամենակատաղի իմպերիալիզմի, թույլ և փոքր ժողովուրդների ամենաանամոթ կեղեքման ու խեղդման ձևը»։ (Երկեր, հ. 28, 4-րդ հրատ., էջ 169)։

Նոր պատերազմի հրահրման քաղաքականություն անցկացնելով, ԱՄՆ-ի իմպերիալիստները, դրա հետ միասին, վախ են զգում իրենց թիկունքի հանդեպ։ Նրանք վախենում են ամերիկյան ժողովրդից, որը պատերազմ չի ուզում։ Աշխատավորների կողմից

իրենց ագրեսիվ պլաններին ցույց տրվող դիմադրությունը ճնշելու համար, ամերիկյան մոնոպոլիաներն անցել են կառավարման տեռորիստական մեթոդների, ԱՄՆ-ը վերածելով մի ոստիկանական պետության, ֆաշիստացման ենթարկելով երկիրը։

Հսկայական չափերով աճել է ԱՄՆ-ի գաղտնի ոստիկանությունը՝ հետաքննությունների ֆեդերալ բյուրոն (ՀՖԲ)։ Ամերիկյան այդ պահնորդական բաժինը գործեր է կազմել ԱՄՆ-ի արդեն 60 միլիոն քաղաքացիների վրա։ Ֆեդերալ բյուրոն բանտ է նետում առաջադեմ ամերիկացիներին, խաղաղության կողմնակիցներին։ Այս ուղղությամբ է «աշխատում» և հակաամերիկյան գործունեությունը հետաքննող հանձնաժողովը, որն ստեղծվել է կոնգրեսի կողմից 10 տարի առաջ և որը վեր է ածվել ֆաշիստական տիպի հիմնարկի։ Ամերիկացիներին հալածելով և ահաբեկելով են զբաղվում նաև Տրումենի հրամանով ստեղծված՝ պետական ծառայողների «չեզոքության»», այսինքն՝ բարեհուսության, ստուգող հանձնաժողովները։ Ամերիկյան մոնոպոլիաները լայնորեն ֆինանսավորում են ամեն տեսակ ֆաշիստական ջարդարարական կազմակերպությունների, ինչպես, օրինակ՝ Կու-կլուկս-կլանին, «Ամերիկյան լեգիոնին» և այլն։

Ամերիկյան բուրժուազիան ամեն կերպ բորբոքում է պատերազմի հիստերիան, կատաղի պրոպագանդ է մղում ռասսայական գերազանցության մարդատյաց



իդեաների օգտին, անփառունակ «ամերիկյան ապրելակերպի» գովաբանման օգտին։

Մասսաների գաղափարական դաստիարակության բոլոր միջոցները՝ մամուլը, գրականությունը, արվեստը, ռադիոն, կինոն, դպրոցը, որոնք ԱՄՆ-ում գտնվում են մոնոպոլիստների ձեռքում, օգտագործվում են ժողովրդի գիտակցությունը մթագնելու, նրան քաղաքական պայքարից հեռու պահելու, ժամանակակից կապիտալիզմի արգահատելի դեմքը քողարկելու, խավարամտություն, սնափառ կամայական դաժանային բարոյականություն արմատավորելու համար։

Անցյալ տարվա սեպտեմբերին կոնգրեսն ընդունեց մի օրենք, որն ամենառեակցիոն օրենքն է ԱՄՆ-ի պատմության մեջ։ Այդ օրենքը կրում է սենատոր Մակկարենի անունը, որը սերտորեն կապված է գանգստերների բանդայի հետ, իսկ վերջերս էլ մերկացվեց կաշառակերության մեջ։ Մակկարենի օրենքը պահանջում է, որ կոմունիստական պարտիան և մյուս պրոգրեսիվ կազմակերպությունները գրանցման ենթարկվեն արդարադատության մինիստրությունում։ Գրանցման ենթարկված կազմակերպությունների անդամները, համաձայն մի այլ նողկալի օրենքի՝ Սմիթի օրենքի, կենթարկվեն հետապնդումների։ Արտակարգ դրություն մտցվելու դեպքում՝ Մակկարենի օրենքը նախատեսում է առանց դատի մասսայորեն բանտարկել և կոնցենտրացիոն լագերներն ուղարկել

այսպես կոչված «քայքայիչ տարրերին»։ Վերջիններիս թվին ամերիկյան իշխանությունները դասում են բոլոր առաջադեմ մարդկանց։ Մակկարենի օրենքն ուղղված է նաև օտարերկրյա ծագում ունեցող անձերի դեմ, որոնք կազմում են ԱՄՆ-ի բնակչության մի վիթխարի մասը։

Անցյալ տարվա դեկտեմբերին Տրումենը «արտակարգ դրություն» հայտարարեց երկրում, խաղաղության կողմնակիցների հետապնդումներն ուժեղացան։ Մակկարենի օրենքի հիման վրա հետապնդումների են ենթարկվում գնալով ավելի ու ավելի մեծ թվով ամերիկացիներ։

Երկրի պրոգրեսիվ ուժերի դեմ մղած պայքարում ամերիկյան պարագլուխներն օգտագործում են շատ պրոֆմիությունների ռեակցիոն վերնախավին, որը կաշառված է բուրժուազիայի կողմից և որը դարձել է կապիտալիստական մոնոպոլիաների գործակալությունը՝ բանվոր դասակարգի մեջ։ Պրոֆմիութենական խոշորագույն միավորում է Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիան, որին գլխավորում է բուրժուազիայի սորկամիտ լակեյ Գրինը։ Աշխատանքի ֆեդերացիան բանվորներին միավորում է ցեխային սկզբունքով։ 1938 թվականից ԱՄՆ-ում գոյություն ունի պրոֆմիութենական երկրորդ միավորումը՝ Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսը, որը բանվորներին միավորում է արտադրական սկզբունքով։ Արտադրա-



կան պրոֆմիությունների կոնգրեսի ղեկավարն է ոխերիմ դավաճան Մերրեյը։ Այդ միավորումների մեջ մտնող պրոֆմիությունների մեծ մասում ղեկավար պոստերը գրավել են բանվորական արիստոկրատիայի ներկայացուցիչները, որոնց կաշառել է բուրժուազիան և որոնք անց են կացնում ձեռնարկատերերի հետ համագործակցելու քաղաքականություն։

Թե ինչ աստիճան պրոֆմիութենական վերնախավը դավաճանում է բանվոր դասակարգին, կարելի է դատել այն փաստից, որ նա պաշտպանում է Տրումենի կառավարության ռեակցիոն քաղաքականությունը, մի կառավարություն, որը բանվորական շարժման դեմ իր պայքարում լայնորեն օգտագործում է Տաֆտ-Հարտլիի օրենքը։ Այդ օրենքը, որ ընդունվել է կոնգրեսի կողմից 1947 թվականին, կառավարությանը և ձեռնարկատերերին մեծ հնարավորություններ է տալիս գործադուլները վիժեցնելու համար։ Օրենքը սահմանափակում է պրոֆմիությունների իրավունքները ձեռնարկատերերի հետ կոլեկտիվ պայմանագրեր կնքելու, նա ձեռնարկատերերի համար հեշտացնում է շտրեյկբրեխերների (գործադուլարեկների) օգտագործումը, պահանջում է պրոֆմիություններից զտել կոմունիստներից։ Բանվորներն իրավամբ այդ օրենքն անվանեցին ֆաշիստական օրենք և ակտիվ պայքար սկսեցին նրա դեմ։

Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիայի և Արտադրական պրոֆմիությունների ղեկավարները պաշտպա-

նում են ամերիկյան կառավարության ոչ միայն ռեակցիոն ներքին քաղաքականությունը, այլև նրա ագրեսիվ արտաքին քաղաքականությունը։ Ուոլ-ստրիտի առաջադրանքներով նրանք քայքայիչ աշխատանք են կատարում միջազգային պրոֆշարժման մեջ։

ԱՄՆ-ի կառավարողները ամենից ավելի դաժան հալածանքների են ենթարկում բանվոր դասակարգի առաջավոր մասին՝ կոմունիստական պարտիային։ ԱՄՆ-ի քաջարի կոմունիստական պարտիան ստիպված է աշխատել չափազանց ծանր պայմաններում։ Ձգտելով գլխատել պարտիան, ամերիկյան ռեակցիան նրա 11 ղեկավարներին դատապարտեց երկարատև բանտարկության և հսկայական դրամական տուգանքների։ Դատապարտվածների մեջ են՝ ԱՄՆ-ի կոմպարտիայի Ազգային կոմիտեի գլխավոր քարտուղար Յուջին Դեննիսը, քարտուղարներ Հես Հոլլը, Ջոն Վիլյամսոնը և պարտիայի այլ ականավոր գործիչներ։ Դատարանի որոշումը, որ թելադրված էր ռեակցիոներների կողմից, հիմնված էր ֆեդերալ բյուրոյի գործակալների սուտ ցուցմունքների վրա։

ԱՄՆ-ի կառավարող շրջանները վերջերս նոր վայրագ հալածանքներ սկսեցին կոմունիստների դեմ։ Հունիսի 20-ին ամերիկյան գաղտնի ոստիկանության ջոկատները շուրջկալներ կազմակերպեցին, որի հետևանքով բանտ նետվեցին ԱՄՆ-ի կոմունիստական պարտիայի 17 ակտիվ գործիչներ։



Չնայած դաժան հալածանքներին, ԱՄՆ-ի կոմունիստական պարտիան ուժեղացնում է իր պայքարը խաղաղության համար։ ԱՄՆ-ի կոմպարտիայի Ազգային կոմիտեի նախագահ Ուիլյամ Ֆոստերի ծննդյան 70-ամյակին նվիրված իր հոդվածում Հես Հոլլը գրել է. «ԱՄՆ-ի երկպարտիական կառավարության ներկա քաղաքականությունը, որ թելադրված է Ուոլ-ստրիտի մոնոպոլիստների կողմից, իմպերիալիստական ագրեսիայի քաղաքականություն է, ժողովուրդների ստրկացման և թալանի քաղաքականություն՝ Ուոլ-ստրիտի մոնոպոլիաների հարստացման համար։ Դա ագրեսիաների ու պատերազմների քաղաքականություն է, և նա չի կարող պաշտպանություն գտնել ոչ մի ազնիվ մարդու կողմից»։

ԱՄՆ-ի կոմունիստական պարտիան, նշելով այն մեծ պատասխանատվությունը, որ ընկած է ԱՄՆ-ի բանվոր դասակարգի և ամբողջ ժողովրդի վրա՝ մարդկության հանդեպ, ներկայումս իր գլխավոր խնդիրն է համարում խաղաղության մասսայական լայն ճակատ ստեղծելը։ Դրա հետ միասին՝ կոմունիստական պարտիան օրավուր ղեկավարում է ամերիկյան պրոլետարիատի դասակարգային պայքարը, կազմակերպում է նրան՝ պայքարելու մոնոպոլիստական կապիտալի հարձակման դեմ, որ վերջինս ձեռնարկել է ընդդեմ աշխատավորների կենսամակարդակի։

ԱՄՆ-ում աճում է ամերիկյան ժողովրդի լայն մասսաների դժգոհությունը Վաշինգտոնի ներքին և արտաքին ռեակցիոն, ֆաշիստական քաղաքականության հանդեպ։ Դրանով է բացատրվում հետպատերազմյան ժամանակաշրջանում պրոգրեսիվ պարտիայի առաջ գալը, որի շարքերում կան շատ ֆերմերներ, բանվորներ, առաջավոր ինտելիգենցիա, մանր և միջին բուրժուազիայի ներկայացուցիչներ։ Այդ պարտիայի գլխավոր դրական կողմն այն է, որ նա հանդես է գալիս հանուն խաղաղության պաշտպանության, հանուն Սովետական Միության հետ հարաբերությունների կարգավորման, հանուն այն բանի, որ հրաժարվեն Կորեայի, Չինաստանի և դեմոկրատական մյուս երկրների նկատմամբ ագրեսիվ պլաններից։

ԱՄՆ-ի բանվորներն ակտիվացնում են իրենց պայքարը ամերիկյան ժողովրդի կենսամակարդակի վրա կատարվող հարձակման դեմ։ Այդ են վկայում գործադուլային շարժման թափն ու ծավալը. Հետպատերազմյան հինգ տարում գործադուլներին մասնակցել է մոտ 15 միլիոն մարդ, մի թիվ, որը համարյա երեք անգամ ավելի է պատերազմին նախորդած հինգ տարում գործադուլներին մասնակցածների թվից։

Զուր են ԱՄՆ-ի կապիտալիստների բոլոր այն ջանքերը, որ գործադրվում են երկրի պրոգրեսիվ ուժերը ջլատելու և հզոր Սովետական Միության կողմից գլխավորվող խաղաղության ու դեմոկրատիայի ճամբ-



րից մեկուսացնելու համար։ Ամերիկյան ժողովրդի մեջ գնալով շարունակ ավելի ու ավելի մեծ նողկանք են առաջ բերում ԱՄՆ-ի ինտերվենցիան Կորեայում և մոնոպոլիաների՝ համաշխարհային երրորդ պատերազմ հրահրելու ձգտումը։

Օվկիանոսից այն կողմ էլ են թափանցել ստալինյան իմաստուն խոսքերը՝ «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ»։ Այդ խոսքերը ոգեշնչում են ԱՄՆ-ի աշխատավորներին՝ էլ ավելի ակտիվորեն ու վճռականորեն պայքարելու խաղաղության համար։

ՅՈՒ. ԿՈԼՈՍՈՎԱ

Աշխարհագրական գիտությունների թեկնածու

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ԼԱՅՆ ԾԱՎԱԼԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ 1951 ԹՎԱԿԱՆԻ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՊԼԱՆՆԵՐԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

1. 1951 թվականի արտադրական պլանների ժամկետից շուտ կատարումը, արդյունաբերության մեջ աշխատողների պատվի գործն է։

2. Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, առաջավորների փորձի ներդրումը, ինքնարժեքի իջեցումը և արտապլանային արտադրանքի թողարկումը— տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելու կարևորագույն պայմանն է։

3. Արտադրական նորմաների ամենօրյա գերակատարումը յուրաքանչյուր բանվորի և բանվորուհու կողմից՝ 1951 թվականի պլանի գերակատարման գրավականն է։

4. Արտադրության տեմպերի անընդհատ բարձրացումը, բարձրորակ արտադրանքի թողարկումը, պետական միջոցների՝ հումքի, նյութերի, էներգիայի խնայողության խստագույն ռեժիմը՝ սոցիալիստական



էկոնոմիկայի զարգացման կարևորագույն պայմանն է։

5. Արդյունաբերության բոլոր բանվորների ակտիվ մասնակցությունը սոցիալիստական մրցությանը, առաջավոր բանվորների, արտադրության նորարարների աշխատանքի մեթոդների արմատավորումը՝ արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու նախապայմանն է։

6. Ինչպես են կատարվում ստանձնված սոցիալիստական պարտավորությունները մեր ձեռնարկությունում, ցեխում, բրիգադում։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ապահովել ձեռնարկությունների շահութաբեր աշխատանքը: «Ս. Հ.»-ի 1951 թ. հուլիսի 26։

Հանուն կոլեկտիվ ստախանովյան աշխատանքի: «Ս. Հ.»-ի 1951 թ. հուլիսի 6-ի առաջնորդողը։

Նախաձեռնություն և համառություն աշխատանքում: «Պրավդա»-ի 1951 թ. հուլիսի 30-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1951 թ. հուլիսի 31-ի համարում։

За досрочное выполнение плана 1951 года. «Правда», 15 июля 1951 г.

## II

## ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ ԵՎ ԱՆԿՈՐՈՒՍՏ ՀԱՎԱՔԵԼ ԲԵՐՔԸ, ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼ ՊԵՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1. Բերքահավաքը անկորուստ և սեղմ ժամկետում ավարտելը, հացամթերումների պլանը ժամկետից

*շուտ կատարելը՝ կոլտնտեսությունների, ՄՏ կայան- ների և սովխոզների տնտեսական-քաղաքական կա- րևորագույն խնդիրն է։*

*2. Գյուղատնտեսական արտելի բոլոր անդամների և նրանց ընտանիքի աշխատունակ ձեռքերի լրիվ մաս- նակցությունը բերքահավաքին, արտադրական նոր- մայի ամենօրյա կատարումն ու գերակատարումը յուրաքանչյուր կոլտնտեսականի կողմից՝ բերքահա- վաքը սեղմ ժամկետում ավարտելու կարևոր պայ- մանն է։*

*3. Աշխատանքային կարգապահության ամրապըն- դումը, բերքահավաքի աշխատանքի ճիշտ կազմա- կերպումը, գյուղատնտեսության առաջավորների փորձի տարածումը, մեքենաները ամբողջ կարողու- թյամբ և բարձր արտադրողականությամբ օգտագոր- ծելը՝ բերքահավաքի հաջողության կարևոր պայ- մանն է։*

*4. Բերքի հավաքման և տեղափոխման ժամանակ կորուստների դեմ ակտիվ պայքար ծավալելը՝ գյու- ղատնտեսության աշխատողների կարևոր խնդիրն է։*

*5. Բերքահավաքի աշխատանքային պլանների կա- տարումը և գրաֆիկի համապատասխան աշխատանքի կազմակերպումը՝ բերքահավաքը ժամանակին վեր- ջացնելու գրավականն է։*

*6. Ինչպիսի սոցիալիստական պարտավորություն է վերցրել իր վրա մեր կոլտնտեսությունը, բրիգադը և ինչպե՞ս ենք այն կատարում։*




ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Բերքահավաքը և պարտիական կազմակերպություն- ների խնդիրները: *«Պարտիական կյանք» № 6, 1951 թ., էջ 1—6։*

Կոմբայնների և կալսիչների անխափան, բարձր արտադրողական աշխատանքի համար: *«Ս. Հ.», 1951 թ. հուլիսի 15։*

Լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը բերքահավաքի շրջանում: *«Ս. Հ.», 1951 թ. հուլիսի 21։*

Բերքը հավաքել սեղմ ժամկետում և անկորուստ: *«Ս. Հ.»-ի 1951 թ. օգոստոսի 4-ի առաջնորդողը։*

Օրինակելիորեն կատարել առաջին պատվիրանը: *«Ս. Հ.»-ի 1951 թ. հուլիսի 31-ի առաջնորդողը։*


*III*

## ԱՇԽԱՐՀԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԸՆԴԴԵՄ ԱՄԵՐԻԿԱ-ԱՆԳԼԻԱԿԱՆ ՌԱԶՄԱԿԱՆ ԱԳՐԵՍԻԱՅԻ

*1. ՍՍՌՄ-ի կողմից գլխավորվող դեմոկրատական ճամբարի պայքարը հանուն խաղաղության, ընդդեմ պատերազմի։*

*2. Խաղաղության համար մղվող պայքարը աշխար- հի բոլոր ժողովուրդների հարազատ, կենսական գործն է։*

*3. Խաղաղության պակտ կնքելու օգտին ստորա- գրությունների հաջող հավաքումը խաղաղության Համաշխարհային խորհրդի կոչի ներքո։*

4. Անձնվեր աշխատանքով ամրապնդենք մեր Հայրենիքի՝ ամբողջ աշխարհում խաղաղության պատվարի հզորությունը։

5. Ամերիկյան իմպերիալիստների ցնորամիտ պլանները համաշխարհային տիրապետություն ձեռք բերելու վերաբերյալ։

6. Սպառազինությունների կատաղի մրցավազքը կապիտալիստական երկրներում, բանակների և ռազմական բյուջեների աճը, Արևմտյան Գերմանիայի վերառազմականացումը ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստների կողմից նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստվելու ապացույց են։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Զրույց «Պրավդա»-ի թղթակցի հետ: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով։*

Ուղերձների փոխանակում ԱՄՆ-ի պրեզիդենտ պ-ն Տրումենի և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ Ն. Մ. Շվերնիկի միջև: *«Ս. Հ.» 1951 թ. օգոստոսի 8։*

Խաղաղասեր ժողովուրդների պարտքը: *«Պրավդա»-ի 1951 թ. օգոստոսի 9-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի օգոստոսի 10-ի համարում։*

Միլիոնների հզոր շարժումը: *«Պրավդա»-ի 1951 թ. օգոստոսի 16-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի օգոստոսի 17-ի համարում։*

---



---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 16 1951 г.

ՎՖ 04359 Պատվեր № 728 Տիրաժ 9250

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան։
Երևան